Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 22 (29)

ՀԿ(բ)Կ ԿԿ Հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԼԵՆԻՆԻ ՄՏՔԵՐԸ ԿՐՈՆԻ ՄԱՍԻՆ

«Բոլոր և ամեն տեսակ ճնշող դասակարգերն իրենց տիրապետությունը պահպանելու համար յերկու սոցիալական ֆունկցիայի կարիք են զգում—դահճի ֆունկցիայի և տերտերի ֆունկցիայի: Դահիճը պետք է ճնշի հարստահարվածների բողոքն ու խռովությունը, տերտերը պետք է նրանց համար գծագրի աղետների և զոհաբերությունների մեղմացման հեռանկարները (դա առանձնապես հարմար է անել՝ առանց յերաշխավորելու այդպիսի հեռանկարների «իրագործելիությունը» . . . ) դասակարգային տիրապետության պահպանման պայմաններում, և հենց այդ միջոցով հաշտեցնի նրանց այդ տիրապետության հետ,

հեռու պահի նրանց հեղափոխական գործողություններից, քայքայի նրանց հեղափոխական տրամադրությունը, ջախջախի նրանց հեղափոխական վճռականությունը»։

(ԼԵՆԻՆ, «Յերկրորդ Ինտերնացիոնալի կրախը». Յերկեր, հատ. 18-րդ, էջ 259)։

* * *

«Կրոնը—հոգևոր ողու մի տեսակ է, վորի մեջ կապիտալի ստրուկները խեղդում են իրենց մարդկային պատկերը, փոքր ի շատե մարդավայել ապրելու իրենց պահանջը։

Բայց ստրուկը, գիտակցելով իր ստրկությունը և պայքարի յելնելով հանուն իր ազատության, կիսով չափ արդեն դադարում է ստրուկ լինելուց։ Արդի գիտակից բանվորը, վոր դաստիարակված է գործարանային խոշոր արդյունաբերության մեջ, լուսավորված է քաղաքի կյանքով, արհամարհանքով հետ է շպրտում իրենից կրոնական նախապաշարմունքը, յերկինքը թողնում է տերտերներին ու բուրժուական



կեղծ բարեպաշտներին, իր համար լավագույն կյանք նվաճելով այստեղ, յերկրի վրա։ Ժամանակակից պրոլետարիատը կանգնում է սոցիալիզմի կողմը, վորը գիտությունը պայքարի յե ներգրավում կրոնական մշուշի դեմ և բանվորին ազատագրում է դեպի հանդերձյալ կյանքն ունեցած հավատից՝ այն բանով, վոր համախմբում է նրան հանուն յերկրային լավագույն կյանքի իսկական պայքար մղելու համար»։

(ԼԵՆԻՆ—«Սոցիալիզմը և կրոնը». Յերկեր հատ. 8-րդ, էջ 419—420)։

* * *

«Կրոնը ժողովրդի համար հաշիշ է—Մարքսի այս ասույթը կրոնի հարցում մարքսիզմի վողջ աշխարհըմբռնման անկյունաքարն է։ Ժամանակակից բոլոր կրոններն ու յեկեղեցիները, բոլոր և ամեն տեսակի կրոնական կազմակերպությունները մարքսիզմը միշտ դիտում է վորպես բուրժուական ռեակցիայի օրգաններ, վորոնք ծառայում են բանվոր դասակարգի շահա-

գործումը պաշտպանելու և նրա մտքի մըթագնման համար»:

(ԼԵՆԻՆ — «Բանվորական կուսակցության վերաբերմունքը դեպի կրոնը». Երկեր, հատ. 14, էջ 68):

* * *

«Աշխատավոր մասսաների սոցիալական ճնշվածությունը, նրանց առերևույթ կատարյալ անօգնականությունը կապիտալիզմի կույր ուժերի հանդեպ, կապիտալիզմի, վորն ամեն օր և ամեն ժամ հազարապատիկ ավելի ամենասոսկալի տառապանքներ, ամենավայրագ տանջանքներ է պատճառում շարքային բանվորներին, քան թե արտակարգ ամեն տեսակի պատահարները, ինչպես օրինակ պատերազմները, յերկրաշարժերն և այլն,— ահա թե վորտեղ է կրոնի ներկայիս ամենախոր արմատը: «Յերկյուղն է աստվածներ ստեղծել»: Վախը կապիտալի կույր ուժի հանդեպ, վորը կույր է, վորովհետև ժողովրդի լայն մասսաների կողմից նախատեսվել չի կարող, վորը պրոլետարիա-



տի ու մանր անտեսատիրոջ կյանքի ամեն մի քայլափոխում սպառնում է նրան «հանկարծահաս», «անակնկալ», «պատահական» քայքայման, կորստի, աղքատության, մուրացկանության, պաուպերիզմի, պոռնկության, սովամահության դուռը հասցնել և հասցվում է,— ահա ժամանակակից կրոնի այն արմատը, վոր նախ և առաջ ու ամենից ավելի պետք է նկատի ունենա մատերիալիստը, յեթե նա չի ուզում մնալ նախապատրաստական դասարանի մատերիալիստ»:

(ԼԵՆԻՆ — «Բանվորական կուսակցության վերաբերմունքը դեպի կրոնը»: Երկեր, հատ, 14, էջ 71):

# ՍՏԱԼԻՆԻ ՄՏՔԵՐԸ ԿՐՈՆԻ ՄԱՍԻՆ

«Ծանր է ու անտանելի բանվոր դասակարգի վիճակը: Տանջալից են ու ծանր աշխատավորների տառապանքները: Ստրուկներ ու ստրկատերեր, ճորտեր ու ճորտատերեր, գյուղացիներ ու կալվածատերեր, բանվորներ ու կապիտալիստներ, կեղեքվածներ ու կեղեքողներ — այսպես է կառուցվել աշխարհը դարեր ի վեր, այդպիսին է մնում նա նաև այժմ յերկրների հսկայական մեծամասնության մեջ:

Դարերի ընթացքում տասնյակ ու հարյուրավոր անգամ աշխատավորները փորձել են թոթափել իրենց ուսից կեղեքիչներին ու դառնալ իրենց վիճակի տերը: Բայց ամեն անգամ ջախջախված ու խայտառակված նրանք հարկադրված եյին նահանջել, սրտի



խորքում պահելով վիրավորանքն ու ստորացումը, զայրույթն ու վհատությունը, հայացքներն ուղղելով դեպի անհայտ յերկինքը, վորտեղ նրանք հույս ունեյին փրկություն գտնել: Ստրկության շղթաները մնում եյին անշարժ, կամ թե հին շղթաները փոխարինվում եյին նորերով, վորոնք նույն չափ ծանր եյին ու ստորացուցիչ: Միայն մեր յերկրում աշխատավորների ճնշված ու կեղեքված մասսաներին հաջողվեց իրենց ուսերից թոթափել կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը և դրա փոխարեն հաստատել բանվորների ու գյուղացիների տիրապետություն»:

(Ընկեր ՍՏԱԼԻՆԻ ճառը 1924 թվի հունվարի 26-ին ԽՍՀՄ Խորհուրդների Համամիութենական 2-րդ Համագումարի սգո նիստում: «ԽՍՀՄ Խորհուրդների 2-րդ Համագումարը». Սղագիր հաշվետվություն, 1924 թ., եջ 26):

***

Մենք պրոպագանդա յենք մղում ու պրոպագանդա յենք մղելու կրոնական նախա-

պաշտամունքների դեմ։ Յերկրի որենսդրությունն այնպես է, որ ամեն մի քաղաքացի իրավունք ունի դավանելու ցանկացած կրոնը։ Այդ յուրաքանչյուրի խղճի գործն է։ Հենց այս պատճառով է, որ մենք կիրառել ենք յեկեղեցու բաժանումը պետությունից։ Բայց կիրառելով յեկեղեցու բաժանումը պետությունից ու դավանանքի ազատություն հռչակելով՝ մենք դրա հետ միասին յուրաքանչյուր քաղաքացու իրավունք ենք վերապահել համոզելու միջոցով, պրոպագանդայի ու ագիտացիայի միջոցով պայքարելու այս կամ այն կրոնի դեմ, ամեն մի կրոնի դեմ։ Կուսակցությունը չի կարող չեզոք լինել կրոնի վերաբերմամբ և նա հակակրոնական պրոպագանդա յե մղում բոլոր ու ամեն տեսակ կրոնական նախապաշարմունքների դեմ, որովհետև նա գիտության է կողմնակից, իսկ կրոնական նախապաշարմունքները դեմ են գնում գիտությանը, որովհետև յուրաքանչյուր կրոն գիտությանը հակադիր մի բան է։ Այնպիսի դեպքեր, ինչպես Ամերիկայումն է, որտեղ մոտ ժամանակներս դարվինականներին դատապարտեցին, մե-



զանում անհնարին են, որովհետև կուսակցությունը վարում է գիտությունն ամեն կերպ պաշտպանելու քաղաքականություն։ Կուսակցությունը չի կարող չեզոք լինել կրոնական նախապաշարմունքների վերաբերմամբ և նա պրոպագանդա յե մղելու այդ նախապաշարմունքների դեմ, որովհետև դա շահագործող դասակարգերի աջակցող և այդ դասակարգերի նկատմամբ հնազանդություն քարոզող ռեակցիոն հոգևորականության ազդեցությունը խախտելու ճիշտ միջոցներից մեկն է։ Կուսակցությունը չի կարող չեզոք լինել կրոնական նախապաշարմունքներ կրողների վերաբերմամբ, աշխատավոր մասսաների գիտակցությունը թունավորող ռեակցիոն հոգևորականության վերաբերմամբ։ Արդյոք մենք ճնշել ենք ռեակցիոն հոգևորականությանը։ Այո, ճնշել ենք։ Դժբախտությունն այն է միայն, որ նա դեռ լիովին լիկվիդացիայի յենթարկված չէ։ Հակակրոնական պրոպագանդան այն միջոցն է, որը պետք է մինչև վերջ հասցնի ռեակցիոն հոգևորականության լիկվիդացիայի յենթարկելու գործը։ Լինում են

դեպքեր, որ կուսակցության անդամներից ոմանք երբեմն խանդարում են հակակրոնական պրոպագանդան ամեն կերպ ծավալելուն։ Եթե կուսակցության այսպիսի անդամներին վտարում են՝ ապա այդ շատ լավ է, որովհետև այդպիսի «կոմունիստները» մեր կուսակցության շարքերում տեղ չունեն»։

(ՍՏԱԼԻՆ—Զրույց ամերիկյան առաջին բանվորական պատվիրակության հետ. «Լենինիզմի հարցերը», 10-րդ հրատ. էջ 192—193)։



Ա. ՅՈՒՐԻՆ

## ՀՈԳԵՎՈՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԻՆՉԻ ՎՐԱ ՅԵ ԾԱԽՍՈՒՄ ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻ ԴՐԱՄՆԵՐԸ

Մեր կուսակցությունը յուրաքանչյուր ագիտատորի առջև խնդիր է դնում՝ ամենօրյա հակակրոնական պրոպագանդ մղել մասսաների մեջ։ Ագիտատորը պետք է քրտնաջան բացատրական աշխատանքի միջոցով հավատացյալներին օգնի ազատագրվելու կրոնական հաշիշից և տերտերների ու աղանդավորականների ազդեցությունից։ Դրա համար նա պետք է, նախ՝ մերկացնի կրոնական խաբեությունը, փաստերի և գիտության տվյալների օգնությամբ ապա-

ցուցի աստծուն և ամեն տեսակի «հրաշք-ների» հավատալու վողջ դատարկությունն ու հակագիտականությունը, յերկրորդ՝ պետք է ոգնի աշխատավորներին յուրաց-նելու մատերիալիստական աշխարհ-ըմ-բռնողությունը, յերրորդ՝ պատմությունից ու ժամանակակից կյանքից վերցված փաստե-րով ցույց տա կրոնի ու հոգևորականության վնասակար, ռեակցիոն ու հակահեղափոխա-կան դերը, չորրորդ՝ դարձյալ անցյալից ու ժամանակակից կյանքից վերցված փաստե-րով ցույց տա կրոնական պաշտամունքի սպասավորների բարոյական նողկալի կերպա-րանքը-այդ կեղծ բարեպաշտների, խաբեբանե-րի ստորությունը, ցոփությունը շահախնդ-րությունը, վորոնք օգտագործում են հետա-մնաց մարդկանց վստահությունը, սնոտիա-պաշտությունն ու խավարամտությունը։

Այս վերջին խնդրի կատարման ասպա-րիզում ագիտատորին ոգնելու համար մենք այստեղ տալիս ենք նյութեր, վորոնց մեջ բերված են յեկեղեցական «հոգևոր հովիվ-ների սուրբ կյանքի» մասին վերջին ժա-



մանակներս հայտաբերված մի շարք փաս-տեր, նաև փաստեր այն մասին, թե նրանք ինչպես են կողոպտում հավատացյալներին։

* * *

Խորհրդային իշխանությունը, բան-վորների և գյուղացիների իշխանությունը հոգևորականությանը զրկեց հողից, հարստությունից ու իշխանությունից. նա յե-կեղեցին բաժանեց պետությունից։ Հենց այդ պատճառով էլ հոգևորականությունն այդպես ատում է Խորհրդային իշխանու-թյունը և ամեն կերպ աշխատում է վնաս հասցնել նրան։

Բայց նա զգում է, վոր հին ժամանակներն այլևս չեն վերադառնա և այդ պատճառով աշխատում են հարմարվել, հնարավորու-թյուններ գտնել այժմ էլ պարազիտ կյանք վարելու, հարստանալու ի հաշիվ աշխա-տավորների։

Շատ հաճախ հավատացյալները չեն կաս-կածում, թե ինչպիսի «սխրագործություն-ների» յեն ընդունակ «բարեպաշտ կրոնա-վորները»։

Աստծով քարոզելով ամեն տեսակ «քրիս-
տոնեական առաքինությունները», փարա-
ջա հագած այդ կեղծ բարեպաշտներն
ամենալկտի ձևով կողոպտում են հավատա-
ցյալներին:

Ցեկեղեցական դրամները բաժանելու հողի
վրա տերտերների և աղանդավորական քա-
րոզիչների միջև սուր ու դմփոց է տեղի
ունենում, վորը հաճախ ընդունում է մո-
լագար բնույթ: Թաքցնելով իրենց սուր
ու դմփոցի անձնական պատճառները, տեր-
տերներն ու աղանդավորական քարոզիչ-
ները հավատացյալներին առակներ են
պատմում, թե իբր իրենք կռվում են «քրիս-
տոսի ճշմարտությունը հաստատելու» հա-
մար:

Վոչ մի տեսակ խոստովանության ժամա-
նակ տերտերները յերբեք չեն պատմում և
չեն պատմի այն սանձարձակ ու ցոփ կյան-
քի մասին, վոր նրանք վարում են իրենց
կողմից խաբված հավատացյալների աշխա-
տավորական դրամների հաշվին:

Ուղղափառ յեկեղեցու «սյուներից» մեկը



միտրոպոլիտ Սերգեյը, վորն անցյալում
յեղել է Ռասպուտինի ամենամերձավոր
զինակիցը, իսկ ներկայումս գլխավորում է
այսպես կոչված՝ տիխոնովականներին,
«հանդարտ և սուրբ համագործության»
հետևանքով կուտակել եր ավելի քան 300
հազար ռուբլի: Իր և իր հետ ապրող միանձ-
նուհու վրա Սերգեյն ամեն տարի ծախսում
եր հսկայական գումարներ, այդ դրամներով
գնելով շամպայն և այլ «միանձնական
մթերքներ», հաճախ Սերգեյի առանձնա-
տանը տեղի եյին ունենում խնճույքներ՝
տեղերից Մոսկվա յեկած նրա ստորադրյալ
յեպիսկոպոսների մասնակցությամբ:

Վերջերս միտրոպոլիտ Սերգեյը տոնեց
իր «հոբելյանը», վորի ժամանակ տեղի
ունեցավ հերթական խնճույք: Նրա մեր-
ձավոր ստորադրյալները — յեկեղեցական
գանձանակի հետ առնչություն ունեցող
տերտերները իրենց «բարերարին» մատու-
ցեցին ադամանդյա մի խաչ, վորին նրանք
վճարել եյին վեց հազար ռուբլի: Հետա-
գայում պարզվեց, վոր այդ գումարը նրանք

գողացել էին յեկեղեցական դրամարկղից: Վախենալով հավատացյալների կողմից մերկացվելուց, այդ տերտերները, միտրոպոլիտ Սերգեյի գիտությամբ, յեկեղեցական մատյանի ծախքային բաժնում գրում են, թե «ծախսված է 6 հազար ռուբլի յեկեղեցու բարեկարգման վրա»:

Կան հավատացյալներ, վորոնք մինչև այժմ կուրորեն հավատում են միտրոպոլիտ Սերգեյին, նրան հարգում են վորպես «չերանելու», չկասկածելով, թե ինչպիսի արարքների յե ընդունակ այդ մոլի յեկեղեցականը:

Միտրոպոլիտ Սերգեյը և նրա ստեղծած «հոգևոր գրասենյակը», վոր բաղկացած եր մերձավոր յեպիսկոպոսներից ու տերտերներից, հավատացյալներից գաղտնի իրենց համար սահմանել եյին հսկայական «աշխատավարձ»:

Բերենք 1936 թվին միտրոպոլիտ Սերգեյի և նրա գործակիցների ստացած «աշխատավարձի» ցուցակը.



1. Միտրոպոլիտ Սերգեյ Ստարոգորոդսկուն տարեկան . . . . . . . . . . . . . . 12.000 ռուբլի
   Նույնին՝ հանուն գիրքի . . . . . 36.000 »
2. Արքեպիսկոպոս Պիտիրիմ Կրիլովին 10.000 »
   Նույնին՝ հանուն գիրքի 28,000
3. Յեպիսկոպոս Սերգեյ Վոսկրեսենսկուն 10000
   Նույնին՝ հանուն գիրքի . . . . . 28.000 »
4. Ավագ յերեյ Լեբեդևին . . . . . 8.000 »
   Նույնին՝ հանուն գիրքի . . . . . 24.000 »

Մի այլ միտրոպոլիտ, Վիտալին, վորը վերանորոգչական, կամ ինչպես այլ կերպ անվանում են նրան «կենդանի» յեկեղեցու ղեկավարն եր, շրջագայական է ուղարկում իր ծխականներին, պահանջելով դրամ հավաքել «հավատարիմ հոտից» նկատի ունենալով նրա դրամարկղի «աղքատացումը»:

Միտրոպոլիտի ստափձան ունեցող այդ հին վանականը, ագահ դրամի նկատմամբ, ներկայումս իր «աղքատացած» դրամարկղում ունի մոտ յերեք հարյուր հազար ռուբլի:

Մեկ տարի սրանից առաջ նրա «համեստ ծնայողությունները» կազմում եյին 450 հազար ռուբլի, բայց այս ժամանակվա ըն-

թացքում «վորոշ գումար» նա արդեն կարողացել է ծախսել։

1936 թվի աշնանը միտրոպոլիտ Վիտալին իր քարտուղարին՝ տերտեր Աղամովին, վորը յեղել է «Ռուս ժողովրդի միության» նախկին անդամ, հանձնարարում է ձեռք բերել մի «հարգի» ամառանոց, վորտեղ նա, «նորին սրբազնությունը» իր միաբանության հետ միասին կարողանա ժամասացությունից հետո «հանգստանալ» հավատացյալների աչքից հեռու։

«Սրբազան տիրակալը» պահանջում է, վորպեսզի ամառանոցում լինի առնվազն 6 հանգստարան, փափուկ կահույքով («վորն ամենաթանգն է»), պարսկական գորգերով և ավազանով՝ լողանալու համար։ Յեզրափակման մեջ առաջարկվում է ամառանոցը շրջապատել բարձր ցանկապատով, վերջինս ներկել յուղաներկով և ամառանոցի տակը փորել մառան, վորտեղ «սև օրվա համար» ունենալ «բարձր տեսակի» գինիների պաշար։

Այդ ամառանոցը և կահույքը ձեռք բե-



րել նստեց ավելի քան հարյուր հազար ռուբլի, ըստ վորում այդ դրամներն այսպես ասած՝ «փոխ եյին առնվել» յեկեղեցական դրամարկղից։

Նույն այդ միտրոպոլիտ Վիտալին մի անգամ բանկետ է կազմակերպում վերանորոգչական յեկեղեցու գոյության տարեդարձի առթիվ։ Բանկետի հաջորդ որն առավոտյան նրա մասնակիցներից մեկը, տերտեր Զարինը մահանում է։ Նրա բաժակակիցները խոր վիշտը դեմքերին հայտարարում եյին, թե «տերհայրը հոգին աստծուն տվեց իր սխրագործ դիրքում», մինչդեռ բժիշկները դիահատման միջոցով պարզեցին, վոր տերհայրը «մեռել է շատ խմելուց»։

Միտրոպոլիտ Վիտալիի մերձավոր գինակիցը, միտրոպոլիտ Ալեքսանդրը, վորն իր միաբանության մեջ հայտնի յեր վորպես կատաղի կնամոլ, համարյա յուրաքանչյուր ամիս իր հասանելիք աշխատավարձից բացի գաղտնի ճանապարհով Վիտալից այսպես կոչված «ընտանեկան նկատառումներով» ստանում եր ամեն անգամ

անվազն յերկու հազար ռուբլի: Միտրոպոլիտ Վիսարիոն Ջորինը, այսպես կոչված Գրիգորեյան յեկեղեցու ղեկավարը, իր միաբանության մեջ ձեռք եր բերել «ֆեոդալի» հռչակ, և այդ վոչ առանց հիմքի: Մոսկվայի յեկեղեցիներում նա նստացրել եր իր «ոպրիչնիկներին» յեկեղեցական դրամարկղների ու գանձանակների նկատմամբ հսկողություն ունենալու համար: Մասնավորապես «Քառասուն նահատակների» յեկեղեցում նա նստեցրել եր իր կնոջը, թունդ յեկեղեցական Լյուբիմովային, վորը զբաղվելիս ե յեղել մոմերի սպեկուլյացիայով, անողոքաբար կողոպտելով հավատացյալներին:

Այդ սպեկուլյատիվ կոմբինացիաների հետևանքով միտրոպոլիտ Ջորինը վաստակել ե հսկայական մի գումար՝ մոտ 250 հազար ռուբլի:

Ինչպես պարզվեց, այդ դրամները նա ծախսելիս ե յեղել հակահեղափոխական նպատակների վրա և «անձնական պահանջների» բավարարման համար: Վորոշ յեկե-



ղեցականների հավաստի կերպով հայտնի յե, վոր միտրոպոլիտ Ջորինը ամեն տարի ճանապարհորդություններ եր կատարում Վոլգայով, յերիտասարդ «միանձնուհիների» մի ամբողջ շքախմբի ուղեկցությամբ, վորոնց պահպանման համար նա նավի վրա որական ծախսում եր ավելի քան 500 ռուբլի:

Միտրոպոլիտ Ջորինը, այդ հմուտ վաճառականը, փարաջա հագած այդ զվարճասերը, շոգենավի ճաշարանում պատվիրում եր խմորեղեն, վճարելով դրա համար 200 ռուբլի և ավելի, իսկ կոշիկները մաքրելու համար «շնորհում եր» 20-ական ռուբլի:

Իր բնակարանին կից մառանում Ջորինն ուներ մոտ 150 փութ մոմի «պաշար»: Մոմը վաճառական միտրոպոլիտի գլխավոր ապրանքն եր: Դրանցով նա տառացիորեն պլոկում եր հավատացյալների մաշկը, յուրաքանչյուր կտոր մոմի համար ստանալով միանգամայն «աստվածային» գին— մեկ ռուբլի, և ավելի:

Հավատացյալներին կողոպտում են վոչ միայն այդ «հոգևոր գեներալները», միտրոպոլիտներն ու յեպիսկոպոսները։

Նրանց յենթակա տերտերները քիչ բանով են զիջում իրենց՝ «տերերին», իսկ յերբեմն դյուրահավատ հավատացյալներից փող կորզելու մեխանիկայի ասպարեզում գերազանցում են նրանցից։

Տերտեր Կուզմա Սիլիչևը, վորը մի ժամանակ Մոսկվայի «Իյերուսալիմսկի» յեկեղեցու վանահայրն եր, անցյալում պանդոկապետ ու հասարակաց տուն պահող, զբաղվում եր հավատացյալների խոկական կողոպուտով, սակագին սահմանելով յեկեղեցական «ծեսերի» համար։ Այսպես՝ որինակ՝ թաղելու համար՝ 60 ռուբլի, հոգեհանգստի համար՝ 40 ռուբլի, աղոթքի համար՝ 35 ռուբլի։

Զբաղվելով մոմի, խնկի ու նշխարի սպեկուլյացիայով, տերտերները գյուղերում այն աստիճան են լկտիացել, վոր փորձում են «կրոնական» տուրք գանձել հավատացյալներից։



Բոլորովին արտակարգ մի փաստ տեղի ունեցավ այս տարի Ռյազանի մարզի Գորլովսկի շրջանի Նլեկոտկի գյուղում։ Մի խումբ հավատացյալներ տեղական Լիսիցին տերտերի լկտի հափշտակություններից զայրացած բողոք ներկայացրին նրա դեմ, իրենց դիմումին, վորպես իրեղեն ապացույց, կցելով Լիսիցինի նամակը հասցեագրված յեկեղեցական խորհրդին։

Մինչև վերջ սանձը կտրած տերտեր Լիսիցինն այդ նամակի մեջ գրում է իր հոտին. «Յեկեղեցական խորհրդի անդամներին—Վասիլի Վլադիմիրովիչին, Նիկիտա Գրիգորյեվիչին և Աննա Ֆյոդորովնային։ Հայտնում եմ ձեզ, վոր յես մեկնում եմ Սկոպին և դուցե ձեզ համար անվերադարձ։ Իմ թանկագիններ, յեթե ձեզ համար ցանկալի յե, վոր յես ձերը լինեմ, ապա խընդրում եմ ձեզ, անհանգստանալ և հանձն առնել մի փոքր գլխացավանք, այսինքն 1) տանի ընթացքում ամբողջ ծխից հավաքել առնվազն 600 ռուբլի և այս որերս, մինչև կիրակի որը այդ գումարը փոխա-

դրել ինձ՝ Սիլային և հանձնել անձամբ, վերցնելով ստորագրություն. այդ ամբողջ գումարը կծախսվի իմ տնային ծախսերը ծածկելու համար. 2) ստորագրություն տալ ինձ յեկեղեցական խորհրդի կողմից, պարտավորությամբ՝ վճարելու ինձ հասանելիք բոլոր հարկերը. 3) ապահովել ինձ մեկ տարվա հացահատիկով, այն է՝ 60 փութ ալյուրով ու 20 փութ ցորենով և այդ բոլորը հավաքել մինչև հոկտեմբերի 15-ը»։

Այնուհետև տերտեր Լիսիցինն էլ ավելի ցինիկ կերպով գրում է՝ «Յեթե համաձայն եք իմ պայմաններին, ապա ձեռնարկեցեք դրանց իրականացմանը, իսկ, յեթե վոչ, ապա կարող եք ինձ մոտ չգալ»։

Մոսկվայի «սուրբ Նիկոլոս» յեկեղեցու հավատացյալներից մեկը, Գերասիմովը, այս տարի դիմում է Մոսկվայի խորհուրդ մի դիմումով, վորի մեջ մերկացնում է այդ յեկեղեցու տերտեր Սմիրնովին այն բանում, վոր նա յեկեղեցական ավագի հետ միասին սիստեմատիկաբար զբաղվում է յեկեղեցական դրամների գողությամբ։ Դի-



մումի մեջ բերվում է մի փաստ, թե ինչպես Սմիրնովն անկեղ պահարանից գողացել է 18 հազար ռուբլի։ Նույն այդ դիմումի մեջ ասված է, վոր տերտեր Սմիրնովը և Մոսկվայի յեկեղեցիների այլ տերտերներ դիմում են ամեն տեսակ խարդախությունների հարկադրումից թաքցնելու համար իրենց յեկամուտները։

Դիմակավորման նպատակով, տերտերները շատ հաճախ յեկեղեցական դրամարկղներից փողը գողանում են յեկեղեցական ավագների միջոցով, վորոնց նրանք ընտրում են այդ նպատակի համար։

Խամովնիկի յեկեղեցու ավագ Բելոզուբը տիրացու Տուրիկովի հետ միասին տերտերների առաջադրանքով դրամ են գողացել յեկեղեցական գանձանակից։ Հենց միայն 1936 թվի ընթացքում Բելոզուբը և Տուրիկովը յեկեղեցական դրամներից յուրացրել են մոտ 25 հազար ռուբլի, վորը նրանք մեկ ամսվա ընթացքում ծախսել են հարբեցողության վրա։ Տերտերներն ու յեկեղեցական ակտիվիստները, խաբելով հավատացյալներին,

այնպես ինչպես և նրանց «տերերը» չեն բավարարվում նրանով, վոր դրամ են վերցնում ուղղակի յեկեղեցական դրամարկղներից ու գանձանակներից։

Այդ տեսակետից օրինակ կարող են ծառայել Սմոլենսկի մի խումբ տերտերներ ու վանականներ, վորոնք 1937 թվին սարքել եյին ընդհատակյա վանք։ Տերտերներն այդ անլեգալ վանքում նստացրել եյին վանականներ Նովիկովին ու Սեմենկովին, միանձնուհի Դրեսատելին, կուլակ յեկեղեցական Բախշինին և օգտագործելով հավատացյալների նախապաշարմունքները, այդ բախտախնդիրներին շրջապատել եյին «սուրբ» կրոնավորների փառքով, վորոնք իբր թե ընդունակ են «բուժելու» հիվանդներին։ Այդ պրովոկացիայի հետևանքով տերտերներին հաջողվել եր վանքը ներգրավել քաղաքում և մերձակա գյուղերում ապրող մի շարք մութ մարդկանց։

Գլխավոր գործող անձը վանքում վանական Նիկոդիմն եր, վորի մասին տերտերները հատկապես ուժեղ կերպով լուրեր եյին



տարածում վորպես «սրբազան» կրոնավորի։ Ինչպես հետագայում պարզվեց, Նիկոդիմը կուլակ ե յեղել, գյուղից փախած ապակուլակացման հետևանքով, և ապա սիֆիլիտիկ, սակայն վերջին հանգամանքը բոլորովին չեր խանգարում նրան անմիջական շփման մեջ մտնելու իր զոհերի հետ և «բուժողի» դեր խաղալու։ Վանական Նիկոդիմը և նրա նման մյուս «մենակյացները» զբաղվում եյին այն հավատացյալների ուղղակի կողոպուտով, վորոնք դժբախտություն ունեյին «օգնության» դիմելու նրանց։ Վերջին ժամանակներս բանն այնտեղ եր հասել, վոր վանական Նիկոդիմը չբավարարվելով կամավոր նվիրատվություններով, վարձ եր սահմանել վանքն այցելելու համար, ըստ վորում նա վարձը գանձում եր վոչ միայն դրամով, այլև բնամթերքով, գերադանցապես ողիով։ Սովորաբար «ցերեկվա աշխատանքից» հետո վանականների այդ շայկան տերտերների հետ միասին յերեկոյան կազմակերպում եր վանական խնջույքներ։ Վանքը լիկվիդացիայի յենթարկելիս սրբա-

պատկերների հետևում հայտաբերվեցին ողու պահեստ, վոսկի, արծաթ և 26 հազար ռուբլի դրամ։

Վանականների նույնպիսի մի խումբ, վորը գլխավորում եր տերտեր Գլադոլեվը, հայտնաբերվեց Մերձմոսկովյան շրջաններից մեկում։ Նրանք հակախորհրդային, պրովոկացիոն ագիտացիան զուգակցում եյին հավատացյալներին խաբելու և նրանցից դրամ կորզելու հետ։ Փարաջա հագած այդ ավանտյուրիստներն իբրև «սուրբ» եյին հանդես բերում վոմն Պախոմ Տուրկեվիչին—Մոսկվայի նախկին վանքերից մեկի սպասավորին։ Այդ «սուրբը», նրա համար հատկապես սարքավորված խուցի մեջ ընդունում եր այցելուներին և զբաղվում «բուժմամբ», ըստ վորում իր այցելուհիներին ստիպում եր բոլորովին մերկանալ։ Տուրկեվիչը կողոպտել եր մոտ 12 հազար ռուբլի և բացի նրանից շատ վոսկի։ Այդ դրամները նա կանխամտածված կերպով կարել եր այն փարուրաքի մեջ, վորով յեկեղեցական ծես եր



կատարում, հավատացյալներին ստիպելով համբուրել փարուրաքը։

Տուրկեվիչի մերձավոր գործակցուհին «բուժմանը» մասնակցելու համար վաստակել եր մոտ վեց հազար ռուբլի։

Ծուլիկների այդ խմբի վոգեշնչողը—արքեպիսկոպոս Դորրոսերգովը, վորը հավատացյալների մոտ հայտնի յեր վորպես հատկապես արժանավոր «լուսավորիչ» և «տնարծաթասեր», տոկոսներ եր ստանում Տուրկեվիչից և այդ ավանտյուրայի հետևանքով կուտակել եր մոտ 12 հազար ռուբլի։ Վանական Ազարի Պավլովը՝ նույն այդ վոհմակից կողոպտած դրամները պահում եր սրբապատկերների մեջ։ Մոսկվայի հունական յեկեղեցու տերտեր Իվան Պապանդոպուլոն իր ցոփ վարքագծով բազմիցս կռիվներ եր սարքում յեկեղեցում, վորոնք շատ հաճախ վերածվում եյին ծեծ ու դմփոցի։ Յերբ հավատացյալները վերջնականապես համոզվեցին, վոր նրանց հայր Իվանը գող է ու անբարոյական, նրանք պահանջեցին, վոր նա հեռանա յեկեղեցուց։ Զցանկանալով ձեռ-

քից բաց թողնել յեկամտավոր պաշտոնը, Պոպանդոպուլոն հավատացյալների դեմ «բողոքելու» գնաց Մոսկվայի խորհրդի հնությունների պահպանման բաժինը և այդտեղ փորձում եր յերեք հազար ռուբլի կաշառք առաջարկել։ Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր փարաջա հագած թշնամին տեղն ու տեղը մերկացվեց։

Աղանդավորական քարոզիչները խաբեության և հավատացյալներին կողոպտելու ասպարիզում հետ չեն մնում «աստվածային արտի» իրենց յեղբայրակիցներից։

Յերկար ժամանակվա ընթացքում «ավետարանական քրիստոնյաների» մոսկովյան աղանդավորականների ղեկավարներից մեկը, քարոզիչ Տրուբինը զբաղվում եր նրանով, վոր հավաքույթների ժամանակ ափսեն ձեռքին շրջում եր հավատացյալների մեջ, կոչ անելով նրանց՝ զոհաբերել «աստծու» գործի համար։ Ինչպես պարզվեց Տրուբինը այդ դրամները դնելիս ե յեղել իր գրպանը։

Մի այլ աղանդավորական քարոզիչ՝ Տիմո



Չենկոն, բապտիստների բանակից, այնքան փող եր կողոպտել հավատացյալներից, վոր ինքնել չգիտեր, թե ինչպես և վորտեղ ծախսի այդ դրամները։ Այդ ճիվաղը ոդեկոլոնի վաննաներ եր ընդունում։

Թագնվելով հավատացյալների թիկունքի հետևում, խաբելով ու կողոպտելով նրանց շատ յեպիսկոպոսներ ու տերտերներ հաճախ իրենց յեկեղեցիները վեր են ածում ցոփության ոջախների։

Այդ տեսակետից չափազանց ցուցանըշական ե Մոսկվայում և Ռյազանում գոյություն ունեցող՝ յեպիսկոպոսների ու վանականների խմբի գործը։ Այդ խմբի մասնակիցները փորձում եյին իրենց ապականիչ ազդեցությունը գործել նրանց մոտիկ կանգնած հավատացյալների նկատմամբ։ Այդ հրեշներն իրենց զոհերին հարբեցնում եյին և այդ միջոցով նրանց քաշ տալիս ամենանողկալի ցոփության ուղին։ Պարզվել ե, վոր այդ խմբի մեջ մտնում եյին Ռյազանի յեպիսկոպոս Յուվենալի Մասլովսկին և Մոսկվայից՝ արքեպիսկոպոս Պիտի-

րիմ Կրիլովը, յեպիսկոպոս Կլոդեցկին, Սերաֆիմ Կրուտենը—գեներալի վորդի, վորը թաքնվել եր վանականի շիմակի տակ, վանական Վարնավան և մի շարք այլ բարձրաստիճան վանականներ:

Ահա այն փաստերի մի մասը, վորոնք ցույց են տալիս յեկեղեցական ու աղանդավորական ղեկավարների իսկական բարոյական դեմքը:

Հավատացյալներից շատերը հիասթափվելով կրոնից ու տեսնելով նրա հակախորհրդային գործերը և յեկեղեցու ու աղանդավորության ղեկավարների մեջ թագավորող ցոփությունը, հեռանում են յեկեղեցուց ընդմիշտ ազատվելով կրոնական հաշիշից:

Հավատացյալների մյուս մասը տատանվում է և արդեն մոտ է նույնպես յեկեղեցուց իր կապերը կտրելուն: Հավատացյալների այդ մասին խորհրդային հասարակայնությունը պետք է օգնի ամենօրյա ու քրտնաջան դաստիարակչական աշխատանքի միջոցով:



# ԸՆԴԴԵՄ ԲԱՐԵՀՈԳՈՒԹՅԱՆ ՅԵՎ ԱՆՀՈԳՈՒԹՅԱՆ ՀԱԿԱԿՐՈՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Ն. ՖՈՄԻՆՈՎԻ—հոդվածը տպվում է կրճատված

Վլադիմիր Իլիչ Լենինը 1920 թվին ասում եր՝ «Մենք տեղից շարժեցինք անասելի ծանրության մի կույտ, անշարժության, տգիտության կույտը... Մենք սկսեցինք սասանել ու խորտակել ամենաարմատացած նախապաշարմունքները, ամենամութ, դարավոր, կոշտացած սովորույթները» [1]:

Այն ժամանակվանից անցել են շատ տարիներ: Մեր յերկրում և մեր ժողովրդի մեջ տեղի յեն ունեցել խոր փոփոխություններ: ԽՍՀՄ–ում արդեն լիովին տիրապետում է տնտեսության սոցիալիստական սիստեման, լիկվիդացիայի յեն յենթարկված բոլոր շահագործող դասակար–

1) Վ. Ի. ԼԵՆԻՆ— Յերկեր, հատ. 25-րդ, եջ՝ 256:

գերը և այդ հիման վրա ձեռք է բերվել աշխատավորների կյանքի արմատական բարելավում: ԽՍՀՄ-ի Նոր Սահմանադրությունն ամփոփեց սոցիալիստական հեղափոխության նվաճումների կրնդհանուր արդյունքը, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ խորհրդային ժողովրդի մղած 20-ամյա պայքարի արդյունքը: «...Սոցիալիզմը ԽՍՀՄ-ի համար այն է, ինչ արդեն ձեռք է բերված և նվաճված է» (Ստալին):

Մեր յերկրում հիմնականում կառուցված է սոցիալիզմը և Ստալինյան Սահմանադրության դրոշի տակ իրականացվում է մինչև վերջ ծավալված խորհրդային, սոցիալիստական դեմոկրատիզմը: Ստալինյան Սահմանադրությունը 11-րդ գլխում հռչակեց ԽՍՀՄ ընտրական սիստեմի հիմնական սկզբունքները: «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրությունը», վոր ընդունվեց ԽՍՀ Միության Կենտգործկոմի 4-րդ նստաշրջանի կողմից, ապահովում է այդ մեծ սկզբունքների ամուր ու անշեղ կենսագործումը: Նոր ընտրական օրենքի կիրառումն առաջ է բերում ամբողջ խորհրդային ժողովրդի արտադրա-



կան ու քաղաքական ակտիվության հսկայական վերելքի բարձրացում:

Մենք պետք է լրջմիտ կերպով տեսնենք այն վիթխարի խնդիրները, վորոնք կանգնած են մեր առջև լիակատար կոմունիստական հասարակության կառուցման ճանապարհին:

Ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1937 փետրվար-մարտյան պլենումում արված իր զեկուցման մեջ հատկապես ընդգծեց այն փաստը, վորը վոչ մի բոպե չի կարելի մոռանալ— «վոր խորհրդային իշխանությունը հաղթել է աշխարհի միայն մեկ վեցերորդ մասում, վոր աշխարհի հինգ վեցերորդ մասը կազմում են կապիտալիստական պետությունների տիրապետությունները» և վոր «Խորհրդային Միությունը գտնվում է կապիտալիստական շրջապատման պայմաններում»: Սոցիալիզմի թշնամիները դեռևս լիովին վոչնչացված չեն և ջախջախված դասակարգերի մնացորդներն աջակցություն են գտնում մեր յերկրի սահմաններից դուրս:

Բացառիկ կերպով մեծ են մեր խնդիրները նոր մարդու համար, եկոնոմիկայի և մարդկանց գիտակցության միջից կապիտա-

լիզմի մնացորդները վերացնելու համար մղվող պայքարում, մեր յերկրի բոլոր աշխատավորներին կոմունիզմի վոգով դաստիարակելու, նրանց նոր, կոմունիստական հասարակության ակտիվ ու գիտակից կառուցողներ դարձնելու գործում: Այդ պայքարը, ինչպես բազմիցս մատնանշել է Լենինը, դժվարին է ու տևական:

Հանցագործություն կլիներ մոռանալ այդ մասին, ընկնել անհոգության ու բարեհոգության գիրկը, թուլացնել պայքարը հանուն նոր մարդու, վորն ազատ լինի կապիտալիզմի մնացորդներից ու տրադիցիաներից: Աշխատավորների մասսաների մեջ կոմունիստական գիտակցության աճման հետևում չի կարելի չտեսնել հին հասարակության՝ դեռևս մեծ ուժ ու արտասովոր կենսունակություն ունեցող՝ մնացորդները, տրադիցիաներն ու նախապաշարմունքները ժողովրդի լայն շերտերի մեջ: Այդ մնացորդների հաղթահարումը կարևորագույն խնդիր է հանդիսանում դեպի կոմունիզմը մեր առաջխաղացման գործում:

Կապիտալիզմի այդ մնացորդների մեջ [illegible] ցորդները, սնոտիապաշտությունն ու նախա-



պաշարմունքները: Դրանք հազարամյակների ընթացքում արմատացել են մարդկանց առօրյա կենցաղի մեջ: Դրանք դեռևս բուն են դնում մեր յերկրի գյուղերի ու քաղաքների բնակչության հետամնաց խմբերի գիտակցության մեջ: Կրոնի սոցիալական արմատները ՍՍՀՄ-ում վոչնչացված են, իսկ կրոնական նախապաշարումների բազան զգալիորեն նեղացել է սոցիալիզմի հաղթանակի, շահագործող դասակարգերի վերացման և լայնորեն ծավալված կուլտուր-լուսավորական աշխատանքի հետևանքով: Տեղի յե ունենում աթեիզմի վիթխարի աճում: Բայց այս բոլորից չի հետևում, վոր հակակրոնական պրոպագանդը մեզ մոտ արդեն կարելի յե մի կողմ դնել, դեն շպրտել, վոր այն մեր յերկրում արդեն հարկավոր չե: Այդ, ամենախոր սխալը կլիներ:

Խորհրդային Միության բանվորները, կոլտնտեսականները և բնակչության մյուս շերտերն ուժեղ կերպով աճել են կուլտուրական ու քաղաքական տեսակետից: Այդ անվիճելի փաստ է: Բայց դեռևս նրանք վոչ բոլորն են ազատագրվել կրոնական կապանքներից, բնավ վոչ բոլորն են արդեն դարձել անաստվածներ—դա նույնպես անվիճելի փաստ է:

Մեր յերկրի շատ շրջաններում հավատացյալների թիվը բավականաչափ մեծ է: Յերբեմն այդ թիվը գերազանցում է անհավատների թվից: Դեռևս քիչ թվով հավատացյալներ չի կարելի գտնել վոչ միայն կոլտնտեսություններում, այլև ձեռնարկություններում: Յեթե գործն այլ կերպ լիներ, ապա Խորհրդային Միության մեջ մինչև այժմ գոյություն չեյին ունենա մոտ 30 հազար կրոնական ընկերություններ, վորոնք հենարան են հանդիսանում մեր յերկրում ջախջախված շահագործող դասակարգերի թափթփուկների համար:

Կրոնական մնացորդները հատկապես ուժեղ են յերկրի ազգային շրջաններում: Այստեղ մինչև այժմ այնպիսի կրոնական տոներին, ինչպես «մկրտությունը», կավճով խաչեր են գծում, վորպեսզի «չար վոգին» չթափանցի տուն, դեռևս պահպանվում է նոր ծնված յերեխային աղբի արկղի մեջ դնելու վայրենի սովորությունը, վորպեսզի նա չմեռնի. ծննդաբերության ժամանակ կանայք դիմում են տատմայրներին, իսկ հիվանդության ժամանակ վհուկներին. ուշաթափությունը բացատրվում է վորպես «չար հոգու» անեծք. հարսանիքը հաճախ կատարվում է հին ձևով:



Մուսուլմանական կրոնը մի ամբողջ շարք սովորություններով (կալիմ, հարսնացուեյին փախցնելը, փոքրահասակ աղջիկներին ամուսնացնելը, չադրա, փարանջա կրելը և այլն) փորձում է պահպանել կնոջ նախկին իրավազուրկ, ստրկական դրությունը ընտանիքում և հասարակության մեջ:

Կրոնական սովորություններն ու ծեսերը շատ հաճախ դեռևս կատարվում են բնակչության վոչ փոքր մասի կողմից նաև Խորհրդային Միության մյուս մարզերում: Փաստերն ասում են, վոր Գորկու, Վորոնեժի, Սմոլենսկի, Մոսկվայի մարզերում, Ուկրայինայում և մի ամբողջ շարք այլ տեղերում դեռ հաճախակի յեն յերեխաներին կնքելու, կրոնական ծեսով թաղում կատարելու, յեկեղեցական ամուսնությունների, յեկեղեցի այցելելու դեպքերը վոչ միայն ծերունիների ու պառավների, այլև յերիտասարդության, հաճախ դպրոցականների կողմից: Գորկու մարզում, որինակ Կստովսկի շրջանի առանձին գյուղերում այդպիսի փաստերը լայնորեն տարածված են նաև այսօր, բայց ՀամԿ(բ)Կ Կստովսկի շրջկոմն ըստ յերևույթին քիչ է մտահոգված դրանով:

Կրոնական սովորությունները և հատկա-

պես կրոնական տոները հսկայական նյութական վնաս են հասցնում սոցիալիստական տնտեսությանը և արգելակում են մասսաների կուլտուրականության վերելքին: Բայց այդ տոները, դժբախտաբար շատերի կողմից դեռ պահպանվում են, հատկապես գյուղում: Մի ամբողջ շարք գյուղերում այդ օրերին տեղի յեն ունենում հարբեցողություն, կռիվներ, կոլտնտեսականների կողմից աշխատանքի դուրս չգալու դեպքեր և այլն:

Սակավ չեն այնպիսի փաստերը, յերբ նույնիսկ խորհրդային ու կոլտնտեսային ակտիվի ներկայացուցիչները շարունակում են կրոնական ծեսեր կատարել: Դրանից դեռ ևս չեն ազատագրվել նաև առանձին կոմյերիտականներ ու նույնիսկ կոմունիստներ: Կոմյերիտականների մեջ կան, օրինակ, այնպիսիները, վորոնք իրենք հենց, ամուսնանում են յեկեղեցում, իրենց յերեխաներին կնքում են և նույնիսկ դեմ են «քվեարկում» յեկեղեցիները փակելուն: Գտնվում են նաև կուսակցության այնպիսի անդամներ, վորոնք դեռևս չեն ազատագրվել կրոնական սովորություններից: Գյուղում և մի քանի բանվորական ավաններում առանձին կոմունիստների բնակարաններում դեռ մին-



չեվ այժմ էլ կախված են սրբերի պատկերներ: Նման փաստերի մասին խոսվեց այս տարի մի շարք մարզերում անցկացված՝ հակակրոնական պրոպագանդի խնդիրներին նվիրված խորհրդակցություններում:

Գաղտնիք չէ նաև այն, վոր յեկեղեցականները փորձում են իրենց ազդեցությունը տարածել խորհրդային դպրոցի վրա. Նրանք ծնողների միջոցով յերեխաներին ստիպում են այցելել յեկեղեցի, կրոնական ծեսեր կատարել: Վորոշ տեղերում տերտերները փորձում են «բարեկամություն», «լավ» հարաբերություններ հաստատել անմիջականորեն դպրոցական յերեխաների հետ, նվերներ են տալիս նրանց, կոնֆետ են առնում նրանց համար և այլն: Հայտնի յե նաև, վոր վորոշ տեղերում տերտերները կազմակերպում են դպրոցական հասակի յերեխաների մկրտություն: Այդպիսի փաստեր մի շարք տեղերում նըշվել են նույնիսկ 1937 թվին: Իսկ կուսակցական ու կոմյերիտական կազմակերպությունների ամենուրեք հարկ յեղած նշանակությունը չեն տալիս այդ փաստերին և չեն տեսնում այն, թե վորքան անհրաժեշտ է լուրջ պայքարը կրոնական նախա-

պաշարմունքների վերացման համար և թե այդ նախապաշարմունքները դեռևս որքան ամուր են պահպանվում աշխատավորների գիտակցության մեջ:

***

Հայտնի յե, վոր կրոնական նախապաշարմունքները նպաստավոր պայմաններ են ստեղծում ամեն տեսակ հակախորհրդային տարրերի գործունեյության համար: Ջախջախված լինելով բաց մարտում, կապիտալիստական ու կուլակային տարրերը, էսէրա-մենշևիկյան աղբը և այլ սպիտակ գվարդիական բեկորները փորձում են սոցիալիզմի դեմ, խորհրդային ժողովրդի դեմ մղած իրենց պայքարում օգտագործել մեր յերկրի աշխատավորության հետամնաց խավերի կրոնական նախապաշարմունքները:

Կրոնի միջոցով թմրեցված հավատացյալներն իրենց հսկայական մեծամասնությամբ հանդիսանալով սոցիալիզմի ազնիվ կառուցողներ, հաճախ ընկնում են հակահեղափոխական տարրերի—կրոնական կազմակերպությունների փաստացի ղեկավարների ազդեցության տակ, վորոնք ձգտում են այդ կազմակերպությունները դարձնել իրենց հակախորհրդային գործունեյության կենտրոնը: Հայտնի յե, վոր կրոնական կազ-



մակերպությունների շուրջն ապաստան են գտել շատ հակախորհրդային տարրեր: Կրոնական կազմակերպությունների «ակտիվի» մեջ իբրև կանոն լինում են հակախորհրդային գործունեյության համար աքսորված ու աքսորից վերադարձած տերտերները, կուլակները և ամեն տեսակ նախկին մարդիկ: Հաճախ այդ բոլոր տարրերն իրենք մնալով ստվերի մեջ, առաջին պլանի վրա յեն քաշում ուրիշներին —կանանց՝ առհասարակ, կոլտնտեսուհիներին ու կոլտնտեսականներին, իսկ յերբեմն նույնիսկ բանվորներին, և ամենից ավելի մենատնտես գյուղացիներին: Յեկեղեցականների ու աղանդավորականների «անտեսանելի» ղեկավարները ձգտում են իրենց հետևից քաշ տալ վոչ միայն հավատացյալների շարքային մասսային, վորը նվիրված է խորհրդային իշխանությանը. առանձին տեղերում յեկեղեցականներն ու աղանդավորականներն իրենց ազդեցությունը տարածում են անկուսակցական, խորհրդային ու կոլտնտեսային ակտիվի և նույնիսկ առանձին կոմունիստների ու կոմյերիտականների վրա:

Յարոսլավլի մարզում 1937 թ. տեղի յեն ունեցել դեպքեր, յերբ կոլտնտեսության

նախագահը միաժամանակ յեղել է յեկեղեցական խորհրդի նախագահ կամ թե տերտերի առաջարկությամբ ավետարան է կարդացել կոլտնտեսականների համար: Իսկ կուսակցական կազմակերպությունները անվրդով նայել են այդ բոլորի վրա և շաղակրատել, թե իրենց շրջանում կրոնի համար հող չկա:

Հայտնի յե նաև, վոր տերտերները, մոլլաները, ռավինները և այլն, ուժեղ կերպով աշխատում են ազդել մեր յերիտասարդության վրա: Վորոշ տեղերում նրանք ամեն կերպ փորձում են յերիտասարդությանը ներգրավել յեկեղեցական ու աղանդավորական կազմակերպությունների մեջ: Այդ նպատակով փորձեր են արվում «կազմակերպելու» յերիտասարդության ժամանցը, ինչպես այդ յեղել է Արևմտյան Սիբիրի մարզի առանձին շրջաններում, կամ թե յերիտասարդությանը ներգրավել յեկեղեցական յերգեցիկ խմբերի մեջ, ինչպես այդ տեղի յե ունեցել Յարոսլավլի մարզի առանձին քաղաքներում: Վիտորդսկի գյուղխորհրդում (Կալինինի մարզ) տեղական տերտերը յերիտասարդությանը հավաքելիս է յեղել յերեկույթների, նրանց



համար գարմոն է նվագել, ղեկավարել է խրճիթ-ընթերցարանին կից յերգեցիկ խմբակը: Իսկ այդ գյուղի սկզբնական կուսակցական կազմակերպության կուսկազմակերպիչն այն կարծիքին է յեղել, վոր այդտեղ վոչ մի վատ բան չկա. այդ կուսկազմակերպիչին թվացել է, թե «տերտերը մեզանից գրագետ է և նրան հարկավոր է ոգտագործել վորպես կուլտուրնիկի»:

Ի հարկե նման զայրացուցիչ խոսակցությունները ոգուտ են բերում տերտերներին ու աղանդավորականներին: Նրանք իրենք էլ հենց, հաճույքով պնդում են, թե նրանցից վոչ վոք «քաղաքականությամբ» չի զբաղվում, հակահեղափոխականներ կարող են լինել, ինչպես հավաստացնում են տերտերները, միայն «բարձր հոգևոր անձանց» մեջ, իսկ «մենք, գյուղական տերտերներս, դուրս ենք յեկել ժողովրդի միջից»:

Յեվ վորոշ տեղերում մեր աշխատողները հավատում են դրան, գովաբանում «ակտիվ» տերտերներին, կամ ինչպես այդ տեղի յե ունեցել Թաթարիայում «պարզաբանում են» կրոնի վնասակար լինելը հենց իրենց՝ տերտերներին, մոլլաներին, «չգրա-

նելով» հավատացյալների։ Մինչդեռ հենց միայն Թաթարական Նուրլատսկի շրջանում գործում են 6 յեկեղեցի և 43 մեչիտ։ Այդ շրջանի մի քանի Թաթարական գյուղերում մեծ Թվով տղամարդիկ ուրբաԹ օրերը դաշտային աշխատանքից գալով հենց ուղիղ գնում են մեչիտ. այդտեղ քիչ չեն այնպիսի դեպքերը, յերբ հիվանդները ջուր են վերցնում «սրբերի աղբյուրից», վորպեսզի շուտով առողջանան։ ԹաԹարիայում քիչ չեն կրոնական ծեսեր կատարելու փաստերը վոչ միայն առհասարակ յերիտասարդության, այլև կոմյերիտականների կողմից։ Մասլով գյուղում (ԹաԹարական ԱԽՍՀ, Ալեքսեյեվսկի շրջան) կիրակի օրերը կոլտնտեսականների մոտ կես մասը յեկեղեցի յե գնում, ըստ վորում իրենց հետ տանելով նաև դպրոցական յերեխաներին։ Կուսակցական կազմակերպությունները գիտեն այդ մասին, բայց միայն արձանագրում են այդ բոլոր փաստերը, իսկ Մարտնչող անաստվածների միության շրջանային խորհուրդները մեծ մասամբ անգործության են մատնված։

Մի ամբողջ շարք կուսակցական կազմակերպություններ գիտենալով յեկեղեցա-



կանների ու աղանդավորականների գործունեության մասին, դեռևս լուրջ միջոցներ չեն ձեռք առել հակակրոնական աշխատանքը ծավալելու ուղղությամբ։

Դեռ մինչև այժմ էլ Սմոլենսկի մարզի շատ շրջաններում կուսակցական կազմակերպությունները միայն արձանագրում են յեկեղեցականների ու աղանդավորականների գործունեության աշխուժացումը, բայց քիչ Թե շատ լուրջ հակակրոնական աշխատանք չեն ծավալում։ Այդ տեսակետից հատկապես անհոգ են Սուխինիչսկի, Դորոգոբուժսկի և Կրասնինսկի շրջկոմները։ Դորոգոբուժսկի շրջանում, օրինակ. դեռ մինչև այժմ էլ կան կոլտնտեսություններ, վորոնք կանոնավոր կերպով տոնում են «Թաղադրական տոները»։ Հաճախ այդ տոնակատարությունները վերջանում են կռվով և տուր ու դմփոցով, բայց կուսակցական կազմակերպությանը, ինչպես և կոմյերիտմիությանը, այդ չի հետաքրքրում։ Առանձին կուսակցական ղեկավարներ մինչև վերջին օրերս էլ դեռ սխալում եյին այդպիսի փաստերը և արհամարհական վերաբերմունք եյին ցուցաբերում դեպի հակակրոնական աշխատանքը։

Մինչև վերջին ժամանակներս հակակրոնական աշխատանքի նկատմամբ մեծ անհոգություն է ցուցաբերել ՀամԿ(բ)Կ Կուրսկի մարզկոմը: Կուրսկի մարզի շրջաններում կազմակերպված՝ Մարտնչող անաստվածների միության կազմբյուրոներն առայժմ գոյություն ունեն միայն թղթի վրա, մինչդեռ յեկեղեցականներն ուժեղացնում են իրենց ակտիվությունը: Կուրսկի մարզի մի շարք կուսակցական կազմակերպություններ չեն անհանգստանում նաև տերտերների ու աղանդավորականների հակահեղափոխական աշխատանքի փաստերով և հաշտվողական վերաբերմունք են ցուցաբերում դեպի տերտերներն ու նրանց հետ առանձին կոմունիստների հաստատած «բարեկամությունը»:

Կոմյերիտական կազմակերպությունները նույնպես, շատ դեպքերում հակակրոնական պրոպագանդ չեն մղում և այն, ինչ այդ մասին գրված է կոմյերիտմիության ծրագրի մեջ, նրանց քիչ է հետաքրքրում:

Դեռ մինչև այժմ էլ շատ շրջանային կոմյերիտական կազմակերպությունների ղեկավարներ միայն խոստանում են, վոր իրենք հակակրոնական ճակատում «վոչ մի



աշխատանք չեն կատարել», առանց ըմբռնելու, վոր այդ աշխատանքը կոմյերիտմիության մեջ կատարվող դաստիարակչական աշխատանքի կարևորագույն, բաղկացուցիչ մասն է հանդիսանում:

Կոմյերիտմիության ծրագրի մեջ ասված է.

> «Համ. ԼԿՅԵՄ-ը համբերատար կերպով պարզաբանում է յերիտասարդությանը սնոտիապաշտության և կրոնական նախապաշարմունքների վնասակարությունը, այդ նպատակով կազմակերպելով հատուկ խմբակներ և հակակրոնական պրոպագանդի գծով դասախոսություններ»:

Բացառիկ կերպով մեծ է պրոֆմիութենական կազմակերպությունների անհոգությունը հակակրոնական աշխատանքի նրանց կողմից համախմբված բանվորների ու ծառայողների— պրոֆմիության անդամների— 22 միլիոնանոց բանակը սոցիալիզմի վոգով դաստիարակելու հարցերում, ինչպես պարտավորեցրել եր ՀԱՄԿԽ-ի 9-րդ պլենումը: Անտարբեր վերաբերմունք դեպի պրոֆմիության անդամների կրոնական համոզմունքները, հանդիպում է ա-

մենուրեք պրոֆմիությունների կուլտուր-լուսավորական աշխատանքի սիստեմում, այդ թվում նաև ՀԱՄԿԽ-ի ներսում:

***

Շատ կուսակցական, պրոֆմիութենական ու կոմյերիտական կազմակերպությունների անգործունեությունն օգտակար է յեկեղեցականներին. Նրանք նկատելիորեն ակտիվանում են, ագիտացիա յեն անում յեկեղեցական նոր շենքեր կառուցելու օգտին, կազմակերպում են դրամական հանգանակություն, թափանցում են կոլտնտեսությունների ու ձեռնարկությունները, կողմնակիցներ հավաքագրելով կոլտնտեսականներին և առանձին հետամնաց բանվորների միջից, աշխատելով իրենց կողմը գրավել յերիտասարդությանը:

Վերջին ժամանակներս յեկեղեցականները, աղանդավորականները և նրանց «ակտիվը» հատկապես ուժեղացրել են իրենց հակախորհրդային գործունեությունը: Նրանք անցնում են ուղղակի քաղաքական աշխատանքի, և օգտվելով այն բանից, վոր մեր կազմակերպությունները յերեսի վրա յեն թողել հակակրոնական պրոպագանդն ու ագիտացիան, բնակչության առավել



հետամնաց շերտերի գլուխն են մտցնում իրենց ռեակցիոն, այդ թվում նաև ամենա կրոնամոլական դոգմաները:

Մի շարք դեպքերում, լրտեսական ու դիվերսիոն խմբերի լիկվիդացիայի ժամանակ պարզվել է, վոր այդ խմբերի կազմի մեջ ճապոնական ու գերմանական հետախուզությունները տրոցկիստների հետ միասին հավաքագրելիս են յեղել յեկեղեցականներին ու աղանդավորականներին: Այս տարվա սկզբներին «Իզվեստիայում» հաղորդվեց, վոր մեր տերիտորիայում գործող մի ճապոնական լրտես-հավաքագրող 1935 թվին կազմակերպած է յեղել յոթ հոգուց բաղկացած դիվերսիոն խումբ, վորի անդամներից յերեքը յեղել են տրոցկիստներ՝ դիմակավորված կուսակցական տոմսով, մեկը դենիկինյան սպա, մեկը ցարական բանակի նախկին սպա, մեկը նախկին կուլակ և մեկն ականավոր աղանդավորական: Յեկեղեցականների ու աղանդավորականների պարագլուխների ուղղակի հակահեղափոխական գործունեության մասին, լրտեսության մեջ նրանց ունեցած մասնակցության մասին, տրոցկիստական ու բուխարինական լրտեսների և ժողովրդի մյուս

թշնամիների հետ կրոնական կազմակերպությունների սերտաճման մասին այս տարվա մայիսին գրեց «Սովետսկայա Պրավդա» թերթը. Փաշխա յեհովայականների բանդան իր կազմի մեջ ունեցել է վո՛չ միայն տերտերներ. Նրա կազմում յեղել են մի նախկին իշխան, ութը նախկին խոշոր անատերեր և յերեք նախկին կալվածատերեր: Այդ հակահեղափոխական բանդայի մի քանի անդամներ մինչև հեղափոխությունը յեղել են սևհարյուրակային «Միխայիլ արխանգելի միության» ակտիվ անդամներ, շատերն անցյալում դատված են յեղել հակահեղափոխական գործունեության համար: Լրտեսության մեջ յեհովայականների մասնակցության մասին 1937 թ. հունիսին հաղորդվել էր Խարկովի մարզի մամուլում: «Խարկովսկի Ռաբոչու» հաղորդագրությամբ, Կրեմենչուգի յեհովայական համայնքի ղեկավարներից մեկը յեղել է գերմանական լրտես:

Պարզ չէ՞ արդյոք, վոր մեր կուսակցական ու կոմյերիտական կազմակերպությունները, ինչպես և պրոֆմիությունները, չպետք է՝ և չեն կարող՝ անուշադրության մատնել այս բոլոր փաստերը:



Կուսակցական, կոմյերիտական ու պրոֆմիութենական կազմակերպություններն իրենց հակակրոնական աշխատանքի մեջ պետք է անդուլ կերպով պարզաբանեն հավատացյալներին, թե դասակարգային թշնամիներն ինչպես են փորձում օգտագործել նրանց, պետք է մերկացնեն և սոցիալիզմ կառուցողների բանակի շարքերից դուրս վռնդեն ժողովրդի բոլոր թշնամիներին:

Պարզ չէ՞ արդյոք, վոր կրոնական մնացորդների վերացումը ժողովրդի մեջից, կարևորագույն քաղաքական խնդիրներից մեկն է:

Յեհովայականները պատրաստ են նույնիսկ ընդունել սոցիալիզմի կառուցման փաստը, բայց ավելացնում են, թե «այստեղ էլ, առանց աստծու գործը գլուխ չեկավ»: «Բոլշևիկները,— ասում են յեհովայականները,— իրենք էլ հասկացան այդ բանը և այդ պատճառով մեզ, կրոնի սպասավորներիս, թույլ տվեցին մասնակցելու ընտրություններին»:

Յեհովայականներն ու ադվենտիստականները չեն թաքցնում իրենց ցանկությունը, վոր նրանց կազմակերպությունները հա–

մարվեն աշխատավորների նույնպիսի կազմակերպություններ, ինչպես... պրոֆմիությունները: Նրանք լուրեր են տարածում, թե իբր կրոնական կազմակերպությունները նույնպես, ԽՍՀՄ Սահմանադրության համաձայն, իրավունք ունեն աշխատավորների պատգամավորների խորհուրդներում և ԽՍՀՄ Գերագույն Խորհրդում առաջադրելու իրենց թեկնածուներին: Այդ կեղծիքը պետք է ամենուրեք մերկացվի:

Ստալինյան Սահմանադրությունը (հոդված 141-րդ) և նրա հիման վրա ընդունված ընտրական օրենքը (հոդ. հոդվ. 56, 57, 70) մեր հայրենիքի աշխատավորներին ամենալայն իրավունքներ ու հնարավորություն են տրամադրում պատգամավորի թեկնածուներ առաջադրելու համար և տալիս է նրանց ազատ անարգել ագիտացիա անելու իրավունք: Բայց ինքնըստինքյան հասկանալի է, որ այստեղ խոսքը աշխատավորների այն հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների մասին է, որոնք թվարկված են «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 56-րդ հոդվածում, և ոչ թե ինչ որ կրոնական կազմակերպու-



թյունների ու խմբերի մասին: Եկեղեցական «քսանյակները», աղանդավորական խմբերը, աշխատավորների ընկերություններ չեն: Դրանք ցուցակագրված չեն հասարակական կազմակերպությունների համար օրենքով սահմանված կարգով: Եկեղեցին և նրա կազմակերպությունները ԽՍՀՄ-ում բաժանված են պետությունից, զրկված են պետական գործերին խառնվելու իրավունքից, այդ թվում նաև այնպիսի մի մեծ պետական գործի, ինչպիսին են յերկրի գերագույն օրգանի և աշխատավորների պատգամավորների խորհուրդների ընտրությունները:

Ջախջախված շահագործող դասակարգերի թափթփուկներն առաջիկա ընտրությունների ժամանակ կփորձեն և իրենք սողոսկել աշխատավորների պատգամավորների խորհուրդների մեջ և այնտեղ քաշ տալ իրենց գործակալությունը: Թշնամի ուժերն արդեն լայնորեն պատրաստվում են առաջիկա ընտրություններին: Ընտրություններին նրանց պատրաստվելու ձևերից մեկն է հանդիսանում կրոնական ու աղանդավորական կազմակերպությունների ոգտագործումը, աշխատավորների գիտակցության մեջ

մարվեն աշխատավորների նույնպիսի կազմակերպություններ, ինչպես... պրոֆմիությունները: Նրանք լուրեր են տարածում, թե իբր կրոնական կազմակերպությունները նույնպես, ԽՍՀՄ Սահմանադրության համաձայն, իրավունք ունեն աշխատավորների պատգամավորների խորհուրդներում և ԽՍՀՄ Գերագույն Խորհրդում առաջադրելու իրենց թեկնածուներին: Այդ կեղծիքը պետք է ամենուրեք մերկացվի:

Ստալինյան Սահմանադրությունը (հոդված 141-րդ) և նրա հիման վրա ընդունված ընտրական օրենքը (հոդ. հոդվ. 56, 57, 70) մեր հայրենիքի աշխատավորներին ամենալայն իրավունքներ ու հնարավորություն են տրամադրում պատգամավորի թեկնածուներ առաջադրելու համար և տալիս է նրանց ազատն անարգել ագիտացիա անելու իրավունք: Բայց ինքնըստինքյան հասկանալի է, որ այստեղ խոսքը աշխատավորների այն հասարակական կազմակերպությունների ու ընկերությունների մասին է, որոնք թվարկված են «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 56-րդ հոդվածում, և ոչ թե ինչ որ կրոնական կազմակերպու-



թյունների ու խմբերի մասին: Եկեղեցական «քսանյակները», աղանդավորական խմբերը, աշխատավորների ընկերություններ չեն: Դրանք ցուցակագրված չեն հասարակական կազմակերպությունների համար օրենքով սահմանված կարգով: Եկեղեցին և նրա կազմակերպությունները ԽՍՀՄ-ում բաժանված են պետությունից, զրկված են պետական գործերին խառնվելու իրավունքից, այդ թվում նաև այնպիսի մի մեծ պետական գործի, ինչպիսին են յերկրի գերագույն օրգանի և աշխատավորների պատգամավորների խորհուրդների ընտրությունները:

Ջախջախված չհաշտվող դասակարգերի թափթփուկներն առաջիկա ընտրությունների ժամանակ կփորձեն և իրենք սողոսկել աշխատավորների պատգամավորների խորհուրդների մեջ և այնտեղ քաշ տալ իրենց գործակալությունը: Թշնամի ուժերն արդեն լայնորեն պատրաստվում են առաջիկա ընտրություններին: Ընտրություններին նրանց պատրաստվելու ձևերից մեկն է հանդիսանում կրոնական ու աղանդավորական կազմակերպությունների ոգտագործումը, աշխատավորների գիտակցության մեջ

[illegible] կրոնական մնացորդների ոչնչացումը։ Միայն քաղաքականապես կարճատես մարդիկ կարող են չտեսնել այդ բանը։

***

Հակակրոնական պրոպագանդը, ինքնըստինքյան հասկանալի է, վոր չի կարող սահմանափակվել նեղ, միայն լուսավորական նպատակներով։ Զափազանց պարզ է կրոնի ռեակցիոն էությունը և նրա սերտ կապը շահագործողների շահերի հետ։ Ուստի, մեր ամբողջ հակակրոնական աշխատանքը պետք է ամենասերտ կերպով կապված լինի տվյալ էտապում դասակարգային պայքարի խնդիրների հետ, և պետք է ենթարկված լինի հիմնական նպատակին— սոցիալիզմի շինարարության ավարտմանը, կոմունիստական հասարակության կառուցմանը։

Լենինը, «Դեպի կրոնը բանվորական կուսակցության վերաբերմունքի մասին» իր հոդվածի մեջ մատնանշում էր.

> «Ժամանակակից բոլոր կրոններն ու յեկեղեցիները, բոլոր ու ամեն տեսակ կրոնական կազմակերպությունները մարքսիզմը միշտ դիտում է վորպես բուրժուական ռեակցիայի



> որգաններ, վորոնք ծառայում են շահագործման պաշտպանության ու բանվոր դասակարգի մտքի մթագնմանը»[1])։

Մեր յերկրի շատ աշխատավորների գիտակցության միջից դեռևս արմատախիլ արված չեն մասնավոր սեփականատիրական սովորույթները, դեպի աշխատանքը վոչ սոցիալիստական վերաբերմունքը, պարապուրդները, պոկողականությունը, հարբեցողությունը, տգիտությունը և անկուլտուրականությունը։ Իսկ կրոնն այդ բոլորը ամրացնում է և ամեն կերպ խրախուսում։ Նա դեռևս շատ մարդկանց պահում է խավարի ու տգիտության մեջ. Նա պայքարում է գիտության դեմ, հավատացյալների գիտակցության մեջ արմատավորելով ամեն տեսակ նախապաշարումներ ու սնոտիապաշտություն։

Հակահեղափոխական, հակախորհրդային գործերը քողարկվում են յեկեղեցական ու աղանդավորական կազմակերպությունների դրոշակի տակ, կազմակերպություններ, վորոնք գլխավորվում են սոցիալիզմի անհաշտ թշնամիների կողմից, այնպիսի մարդ

1) Վ. Ի. Լենին— Երկեր, հատ. 14-րդ, էջ 68.

կանց, նրանք ամեն տեղ ու ամենուրեք փորձում են հավատացյալներին օգտագործել (և առանձին դեպքերում այդ բանը նրանց հաջողվում է) իրենց հանցավոր նպատակների համար: Նրանք վոչ միայն իրենց պաշտպանության տակ են առնում ժողովրդի ամենաատոր թշնամիներին—տրոցկիստական և բուխարինյան մնացորդներին, տերորիստ հետախուզական օրգանների լրտեսներին, այլև իրենք են կազմակերպում ու կատարում լրտեսական աշխատանք: Իսկ ամեն տեսակ «սուրբ» տերտերները, կրոնականները ու թափառաշրջիկ «մարգարեները» ամենուրեք, վորտեղ նրանք լինում են, հակահեղափոխական լուրեր են տարածում, աշխատում յեն անում կոլտնտեսությունները քանդելու համար, աշխատում յեն անում ստախանովյան շարժման դեմ, այնպիսի յերևույթներ, ինչպես արեգակի խավարումը, և այն օգտագործում են «աստվածային պատժի» և «աշխարհի վերջի» մասին իրենց քարոզների համար:

Յեկեղեցականները ու աղանդավորները չեն դադարեցնում իրենց պայքարը խորհրդային իշխանության դեմ: Նրանք այդ պայքարը մղել են բոլոր ետապներում.



Նրանք այդ պայքարը մղում են նաև այժմ, հօգուտ շահագործողների շահերի: Բոլոր ժամանակների շահագործող դասակարգերը գիտակցաբար արմատավորում և պաշտպանում եյին կրոնը, ինչպես այն արմատավորում ու պաշտպանում են նրանք նաև այժմ կապիտալի յերկրներում, ձգտելով իրենց ազդեցության տակ ներքաշել և մոլորության մեջ գցել բնակչության ամենալայն շերտերին: Իրենց բոլոր գործունեությունների մեջ կրոնական խավարամոլները ղեկավարվում են կապիտալիզմի ու ֆաշիստական բարբարոսների շահերով: Յեկեղեցական խավարամոլները վոչ միայն արշավանքներ են կազմակերպում գիտության և նրա առաջավոր մարդկանց դեմ. Նրանք փառաբանում են ֆաշիստական ճիվաղներին, հրահրելով նրանց նոր հափշտակիչ պատերազմների, խաղաղ ժողովրդի բնաջնջման: Նրանք նողկալի զրպարտություններ են տարածում Խորհրդային Միության մասին, ուղղակի օգնություն են ցույց տալիս ռեակցիային:

Այսքանն արդեն բավական է հասկանալու համար, թե վորքան լայնորեն պետք է ծավալվի կուսակցության դաստիարակչա-

կան աշխատանքը մասսաների մեջ, պայքարը կապիտալիզմի մնացորդների դեմ և առաջին հերթին մարդկանց գիտակցության մեջ եղ– ված կրոնական մնացորդների դեմ:

Սակայն դեռևս գտնվում են վոչ փոքր թվով այնպիսի կուսակցական ղեկավարներ, նույնիսկ ամբողջ կազմակերպություններ, վորոնք այդ բաղարից հարկ յեղած հետևու– թյուններ չեն արել իրենց համար և յեկե– ղեցականների գործունեյության աշխուժաց– ման փաստերի կապակցությամբ ձեռք չեն առել այն միջոցները, վորոնք բղխում են (Համ Կ(բ)Կ Կենտկոմի փետրվար–մարտյան պլենումի վորոշումներից:

Այդպիսի ընկերները դեռևս գերի յեն գտնվում այն նեխած ու կեղծ թեորիայի ձեռքում, թե Խորհրդային Միության մեջ ներկայումս կրոնն արդեն վոչ մի դեր չի խաղում, վոր բանվորներն ու կոլտնտեսա– կանները կուլտուրապես այնքան են աճել, վոր իբր թե կարիք չեն զգում վոչ մի հա– կակրոնական պրոպագանդի: Կեղծ է նաև այն պատկերացումը, թե հակակրոնական պրոպագանդը մեզնում անցած ետապ է հանդիսանում:

Դեռ վերջերս այդ թեորիաները տարած– վում եյին մեր մամուլի եջերում այնպիսի



մարդկանց կողմից, ինչպես Լուկաչևսկին, վորը «Հակակրոնական պրոպագանդը ժա– մանակակից ետապում» իր բրոշյուրի մեջ (1936 թ.) բանն այնպես եր դուրս բերել, վոր կրոնի ազդեցությունը կոլտնտեսական– ների մոտ միայն յերբեմն է հանդես գալիս:

Իսկ ընկ. Պուտինցևը (տես նրա հոդվածը «ՍՍՀՄ–ում խղճի ազատության մասին» վերնագրով, զետեղված «Պոդ զնամենեմ մարքսիզմա» ժուռնալի 1937 թ. № 2–ում) «սահմանեց», վոր մեր յերկրում այլևս չը– կան հավատացյալներ: «Տաճարն աստծուն աղոթում են միայն ապահովագրման հա– մար, համենայն դեպս»[1]): Իսկ տերտերնե– րը Պուտինցևի կարծիքով, ավազակություն են դիմել, յեկեղեցիները բաց անելու մա– սին դիմումներ կազմելով իբր թե հավա– տացյալների անունից: «Հարկավոր է մեր– կացնել տերտերական մեքենայություննե– րը»,— գրում է Պուտինցևը, «ՍՍՀՄ–ում խղճի ազատության մասին» իր հոդվածի մեջ,— «վաղուց աշխատավորների կամքով փակված յեկեղեցիները բաց անելու պահին ստորագրություններ հավաքելու ապարի–

1) Հոդվածն առանձին բրոշյուրով հրատարակվե– լիս ընկ. Պուտինցևն ուղղել է այդտեղը:

կցում: Կան, ճիշտ է, դեպքեր, յերբ յեկեղեցիները տերտերի և հավատացյալների համաձայնությամբ ժամանակավորապես զբաղեցված են վորպես հացահատիկի պահեստներ: Այդպիսի յեկեղեցիներն իհարկե չի կարելի համարել փակված, քանի վոր կենտրոնական, ասենք նաև տեղական իշխանությունները չեն հաստատել դրանց փակումը: Այդպիսի յեկեղեցին բաց անելը բնավ չի նշանակում կրոնի «վերածնման» և «աշխուժացման» փաստ: Այդպիսի յեկեղեցին բաց անելը նշանակում է, վոր տվյալ վայրում դեռևս կան հավատացյալներ... Այլ է խնդիրը— վոր յեկեղեցիները, վորոնք վաղուց և օրինական կերպով փակված են: Այդպիսի յեկեղեցիները նորից բաց անելու համար տերտերները դիմում եյին ավազակության, յեկեղեցիները բաց անելու մասին դիմումներ կազմելով՝ իբր թե հավատացյալների անունից»:

Կուսակցական, կոմյերիտական, պրոֆմիութենական և այլ կազմակերպությունների մեծամասնության ինքնահանգստացման, հակակրոնական պրոպագանդի հարցերում նրանց օպորտունիստական բարեհոգության ու անհոգության հետևանքը յեղավ յեկեղեցականների գործունեության,



իսկ վորոշ տեղերում նրանց ազդեցության ուժեղացումը: Այդ բանին օժանդակում եյին կուսակցական որգանները սողոսկած՝ ժողովրդի թշնամիները, տրոցկիստներն ու բուխարինականները, գիտակցաբար ձախողելով կուսակցական պրոպագանդը, ագիտացիան ու հակակրոնական աշխատանքը:

***

Կուսակցությունը միշտ հակակրոնական պրոպագանդը համարել է, և համարում է, իր կարևորագույն խնդիրներից մեկը: Դեռևս Մարքսն ու Ենգելսը—գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրները,— մշտապես մատնանշում եյին կրոնական հաշիշի դեմ, կրոնի ռեակցիոն ազդեցության դեմ պայքարելու անհրաժեշտությունը: Կրոնը—ոպիում է ժողովրդի համար, ասում եր Մարքսը:

Մարքսի ու Ենգելսի գործի հանճարեղ շարունակողները— Լենինը և Ստալինը, միշտ կուսակցությունն ու բանվոր դասակարգին դաստիարակել են ամեն տեսակ կրոնական խավարամոլության նկատմամբ անհաշտության վոգով, բացահայտելով կրոնի ռեակցիոն եյությունն ու նրա կապը շահագործողների շահերի հետ:

«Մեր պրոպագանդն անհրաժեշտորեն պարունակում է նաև աթեիզմի պրոպագանդ,— սովորեցնում է Լենինը,— մենք վոչ մի կերպ չենք կարող կրոնը մասնավոր գործ համարել մեր սեփական կուսակցության վերաբերմամբ»։ Վորովհետև կրոնն ու ամեն տեսակի կրոնական մնացորդները կապիտալի ճնշումից ժողովրդական մասսաների ազատագրման լուրջ խոչընդոտներից մեկն են հանդիսանում։

«...Ամեն տեսակ կրոնական գաղափար, ամեն մի գաղափար ամեն տեսակ աստծու մասին..., այդ— ամենավտանգավոր այլանդակությունն է, ամենանողկալի «վարակը»,— գրում էր Լենինը Գորկուն։ «Մենք պրոպագանդ ենք մղում և պրոպագանդ կմղենք կրոնական նախապաշարմունքների դեմ,— սովորեցնում է Ստալինը։ Պայքարն այդ նախապաշարմունքների դեմ, կրոնական հաշիշի դեմ, պայքար է հանուն նոր մարդու, հանուն գիտության ու տեխնիկայի տիրապետման, հանուն կուլտուրայի ծաղկման, հանուն կոմունիզմի։

Ընկեր Ստալինը մատնանշում է.

«Կուսակցությունը չի կարող չեզոք լինել կրոնի վերաբերմամբ, և նա հա-



կակրոնական պրոպագանդա յե մղում բոլոր ու ամեն տեսակ կրոնական նախապաշարմունքների դեմ, վորովհետև նա գիտության է կողմնակից, իսկ կրոնական նախապաշարմունքները դեմ են գնում գիտությանը, վորովհետև յուրաքանչյուր կրոն գիտությանը հակադիր մի բան է»1)։

Պետք է վճռականորեն վերջ դնել ապորտունիստական բարեհոգությանը հակակրոնական պրոպագանդի հարցերում։ Այդ են պահանջում մեր կուսակցության ծրագիրը, կուսակցության համագումարների և Համ. Կ.(բ)Կ. Կենտկոմի փետրվար-մարտյան բոլշևիզմին տիրապետելու խնդրից, վոր դրել է մեր առջև ընկեր Ստալինը։

ԽՍՀՄ Սահմանադրությունը բոլոր քաղաքացիների համար ճանաչում է կրոնական պաշտամունքների կատարման ազատություն և հակակրոնական պրոպագանդի ազատություն։

«Քաղաքացիների համար խղճի ազատության ապահովելու նպատակով յեկեղեցին ԽՍՀՄ-ում բաժանված է պետությու-

1) Ի. ՍՏԱԼԻՆ— «Լենինիզմի հարցերը», եջ 192։

նից և զրկումը՝ յեկեղեցուց: Կրոնական պաշտամունքների կատարման ազատությունը և հակակրոնական պրոպագանդայի ազատությունը ճանաչվում է բոլոր քաղաքացիների համար»,— ասված է ԽՍՀՄ Սահմանադրության 124-րդ հոդվածում: Սակայն հակակրոնական պրոպագանդայի իրավունքը դեռևս չափազանց թույլ է ոգտագործվում կուսակցական, կոմյերիտական, պրոֆմիութենական և այլ հասարակական կազմակերպությունների կողմից: Փոխանակ համբերատար կերպով, հետևողականորեն, մշտապես պարզաբանելու աշխատավորների լայն մասսաներին կրոնական հայացքի վնասակարությունը, փոխանակ պայքարելու այն բանի համար, վորպեսզի «խիղճն ազատագրել կրոնական սնոտիապաշտությունից», ինչպես ասում էր Մարքսը «Գոթայի ծրագրի քննադատության» մեջ (1875 թ.), այդ կազմակերպությունները պատրաստ են կրոնական նախապաշարմունքների դեմ մղվող ամբողջ պայքարը հանգեցնել վարչական միջոցառումների— փակել աղոթարանները, սպառնալ, թե յեկեղեցի այցելելն «եժան չի նստի» և այլն:



Այդպիսի «միջոցառումների» կողմնակիցները քաղաքականապես պրիմիտիվ կերպով են պատկերացնում կրոնը. նրանց թվում է, վոր աղոթարանների և պաշտամունքային սպասավորների բացակայությունը հավասարազոր է աշխատավորների մեջ կրոնական մնացորդների բացակայության:

Այդպիսի «պայքարն» ոգուտ է միայն դասակարգային թշնամուն: Այդպիսի պայքարը միայն ամրապնդում է կրոնական կազմակերպությունների դիրքերը, հետ է պահում կրոնական նախապաշարմունքներից ժողովրդական մասսաների ազատագրման պրոցեսը: Այդպիսի քյալլադյոզական արարքները յեկեղեցականների կողմից ոգտագործվում են հակախորհրդային ագիտացիայի համար:

Պատահականորեն չէ, վոր Լենինն ու Ստալինը միշտ պայքարել են վոչ միայն կրոնի նկատմամբ սոցիալ-դեմոկրատիայի և ռուսական մենշևիկների ոպորտունիստական, հաշտվողական վերաբերմունքի դեմ, այլև ընդդեմ կրոնի ամկարար և մակերեսային «պատերազմի» ներկայացուցիչների ու կողմնակիցների դեմ:

Կրոնական նախապաշարմունքների դեմ

մենք պետք է պայքարենք բնակչության բոլոր շերտերի մեջ լայնորեն ծավալված հակակրոնական պրոպագանդայի միջոցով:

Մի ամբողջ շարք դեպքերում աշխատավորները հաստատակամորեն խնդրում են փորձված դասախոսություններ կազմակերպել կրոնի հետ կապված մի շարք հարցերի վերաբերյալ: Նրանք ուզում են իմանալ կրոնի ծագման մասին. նրանց հետաքրքրում են նաև այնպիսի թեմաներ— կրոնն ու գիտությունը, կրոնը վորպես բանվորների ու գյուղացիների դեմ բուրժուազիայի պայքարի զենք, սոցիալիզմը և կրոնը, կրոնը 1905, 1917 թվականների հեղափոխությունների և ԽՍՀՄ քաղաքացիական պատերազմի մեջ, կրոնը Իսպանիայում տեղի ունեցող պատերազմի մեջ, կրոնը կապիտալիստական յերկրներում և մասսաների հեռանալը կրոնից, հակակրոնական պրոպագանդի խնդիրները ներկա շրջանում և այլն և այլն:

Բայց այդ հարցերը շատ տեղերում լայնորեն չեն լուսաբանվում: Այդ աշխատանքը կանոնավորելու համար հարկավոր է կուսակցական կազմակերպությունների միջոցով մոբիլիզացիայի յենթարկել յեղած



բոլոր ուժերն ու հնարավորությունները— պրոպագանդիստների ու ագիտատորների կադրերը, ուսուցիչներին, բժիշկներին, ագրոնոմներին, բարձրագույն դպրոցների դասախոսներին, Մարտնչող անաստվածների միության աշխատողներին, ժողովրդական լուսավորության որգանների դասախոսական բյուրոները, մամուլը, կինոն, ռադիոն և այլն:

Բնական գիտական, մատերիալիստական, աթեիստական աշխարհայեցողության տարածումը բնակչության լայն խավերի մեջ— աշխատավորների մեջ կրոնական նախապաշարմունքների դեմ պայքարելու գլխավոր ձևերից մեկն է: Լենինը «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» իր հոդվածում մատնանշում է, վոր մենք պայքար մղելով մատերիալիստական աշխարհայեցողության տարածման համար, պետք է մասսաներին ամենաբազմազան նյութ տանք աթեիզմի պրոպագանդի վերաբերյալ, աշխատավորներին ծանոթացնենք կյանքի ամենաբազմազան բնագավառներից վերցված փաստերի հետ: Կուսակցական կազմակերպությունները պետք է բոլշևիկորեն գլխավորեն պայքարը հանուն

աշխատավորների ազատագրման յեկեղեցականների ու կրոնական հաշիշի ազդեցությունից։

Այդ հատկապես կարևոր է այժմ, յերկրի քաղաքական կյանքում տեղի ունեցած շրջադարձի պայմաններում, այն պայմաններում, յերբ յեկեղեցականներն ու աղանդավորական պարագլուխներն աշխուժացրել են իրենց հակախորհրդային գործունեությունը և պատրաստվում են աշխատավորների պատգամավորների խորհուրդներում քարշ տալ իրենց թեկնածուներին։ Ամեն կերպ ծավալելով մասսայական-քաղաքական աշխատանքը, պրոպագանդն ու ագիտացիան՝ Համ. Կ.(բ)Կ. Կենտկոմի և ընկեր Ստալինի ցուցումներին համապատասխան, կուսակցական կազմակերպությունները, կոմյերիտմիությունը և պրոֆմիությունները պարտավոր են անհապաղ, առանց հետաձգելու ամենուրեք ծավալել հակակրոնական աշխատանքը և այդ հատկապես գյուղի ու քաղաքի բնակչության առավել հետամնաց խմբերի մեջ, ջախջախելու համար յեկեղեցականների ու աղանդավորականների հակախորհրդային գործունեությունը։



Պետք է ամենուրեք կրոնական հաշիշի ազդեցությունը հակադրել կոմունիստական կենդանի խոսքը։ Կրոնական, մոլեռանդ խեղաթյուրված աշխարհըմբռնողությանը, մենք պետք է հակադրենք և լայնորեն մասսաների մեջ տարածենք մատերիալիստական աշխարհայեցողությունը, վորը միակ ճիշտն է և խիկական գիտականը։ Այդ նպատակով անհրաժեշտ է վերականգնել և ամեն կերպ ակտիվացնել Մարտնչող անաստվածների միության օրգանների աշխատանքը, և այդ վոչ միայն մարզային ու շրջանային կենտրոններում, այլև ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում։ Ողնությունը տեղերին պետք է կազմակերպել նախ և առաջ կենդանի ուժերով, դասախոսներով, տեղերում հարկավոր է հավաքել անաստվածների կադրերը և կազմակերպել նրանց վերապատրաստումը դասընթացներում. պատրաստել պրոպագանդիստների ու ագիտատորների կադրեր և շրջաններում կազմակերպել միջտական հակակրոնական սեմինարներ, իսկ կուսկաբինետներում՝ կոնսուլտացիաներ հակակրոնական պրոպագանդայի ու ագիտացիայի հարցերի վերաբերյալ։

Հակակրոնական աշխատանքի մեջ պետք է լայնորեն օգտագործվեն մեր բոլոր կուլտուրական ուժերը քաղաքներում և հատկապես գյուղում: Գյուղում ուսուցիչը, բժիշկը, ագրոնոմը այն կուլտուրական ուժերն են, որոնց վրա առաջին հերթին պետք է հենվեն կուսակցական կազմակերպությունները ու Մարտնչող անաստվածների միության կազմակերպությունները: Առանձին տեղերում այդ բանն արդեն արվում է: Օրինակ՝ Մարտնչող անաստվածների միության Վորոնեժի մարզային խորհուրդը դասախոսություններ կարդալու համար, հակակրոնական պրոպագանդի համար ներգրավել է մարզային կենտրոնի գիտական աշխատողներին և բարձրագույն ուսումնական հաստատությունների դասախոսներին:

Ծավալելով հակակրոնական աշխատանքը հատկապես բնակչության լայն խավերի մեջ, չի կարելի մոռանալ նաև խորհրդային դպրոցը, որտեղ փորձում են սողոսկել եկեղեցականները երեխաների և ուսանող երիտասարդության գիտակցությունը թունավորելու համար:

«Դպրոցը,— ասված է Համ. Կ.(բ)Կ.



ծրագրի մեջ,— պետք է լինի ոչ միայն առհասարակ կոմունիզմի սկըզբունքների հաղորդիչը, այլև պրոլետարիատի գաղափարական, կազմակերպչական, դաստիարակչական ազդեցության տարածողը աշխատավոր մասսաների կիսապրոլետարական ու ոչպրոլետարական շերտերի վրա, նպատակ ունենալով դաստիարակել այնպիսի սերունդ, որն ընդունակ լինի վերջնականապես հաստատելու կոմունիզմը»:

Որպես կոմունիստական դաստիարակության զենք, խորհրդային դպրոցը կարող է և պետք է ծավալի հակակրոնական, բնական գիտական, կոմունիստական գաղափարների ամենալայն պրոպագանդ:

Բայց դժբախտաբար իր այդ խնդիրը մեր դպրոցն այժմ կատարում է շատ վատ: Հաճախ դպրոցն ինքը բաց է թողնում այնպիսի մասնագետներ, այդ թվում նաև ուսուցիչներ, որոնք ազատագրված չեն կրոնական մնացորդներից: Մի ամբողջ շարք տեղերում պայքարը թշնամիների դեմ, որոնք փորձում էին ուսանող երիտասարդությանը գրավել կրոնական ար-

րամադրություններով, հասցվել է յերկ-
րորդական խնդրի մակարդակի, իսկ քա-
ղաքական աշխատանքի ճաշակը կորցված է
յեղել:

Դասագրքերի մեջ համարյա բացակայում է հակակրոնական պրոպագանդը, իսկ դպրոցների ուսումնական ծրագրերն իբրև կանոն չեն օգտագործվում այդ տեսակետից: Մամուլում արդեն ասվել է, որ դպրոցների վերջին ծրագրերը պայքարի չեն դնում կրոնի և սնապաշտության մեջ յեղած ամեն տեսակ իդեալիստական տենդենցների դեմ:

Դպրոցներում աշակերտների մեջ պետք է խորապես բարելավվի դաստիարակչական հակակրոնական աշխատանքը, իսկ այնպիսի առարկաների դասավանդումը, ինչպես կենսաբանությունը, ֆիզիկան, քիմիան և այլն, պետք է տոգորված լինի հակակրոնական պրոպագանդով: Օգտագործելով իր բոլոր ուժերն ու միջոցները, դպրոցը պետք է լայն գիտական-լուսավորական ու հակակրոնական պրոպագանդ ծավալի նաև հասակավոր բնակչության մեջ:

Բայց մինչև այժմ ժողովրդական կըրթության օրգանները քիչ են մտածում ա-



շակերտության և հասակավոր բնակչության հակակրոնական դաստիարակության գործը բարելավելու մասին:

***

Աշխատավոր մասսաների դաստիարակությունը սոցիալիստական դեմոկրատիզմի վոգով, յերկրի օրենքները, հանրային, սոցիալիստական սեփականությունը հարգելու վոգով, նոր, սոցիալիստական կարգապահության դաստիարակումը, ժողովրդի թշնամիների՝ օտար դիվերսանտների, վնասարարների, լրտեսների, ֆաշիզմի տրոցկիստական- բուխարինական գործակալների նկատմամբ ատելության դաստիարակումը- այս բոլորն ամենասերտ կերպով կապված են աշխատավորների գիտակցության միջից կրոնական մնացորդները վերացնելու համար մղվող պայքարի հետ:

Ահա թե ինչու աշխատանքը հակակրոնական ֆրոնտում, սիստեմատիկ հակակրոնական պրոպագանդան ու ագիտացիան, մասսաների կոմունիստական լուսավորությունը կուսակցական կազմակերպությունների քաղաքական կարևորագույն խնդիրն է, սոցիալիզմի նորանոր հաղթանակների, մեր սքանչելի հայրենիքի հետագա ծաղկման,

ժողովրդի յերջանկության համար մղվող պայքարի կարևորագույն տեղամասը: Յեվ այստեղ, կրոնական ու կապիտալիզմի մյուս մնացորդները մարդկանց գիտակցության միջից վերացնելու համար մղվող պայքարի ճակատում, գլխավորը կախված է մեզանից, բոլշևիկներից: Այդ աշխատանքը նույնպես, կուսակցական կազմակերպությունները պետք է գլխավորեն և որը–որին, բոլշևիկորեն ղեկավարեն այն:





Ի տեղի պատ. խմբագրի՝ Հ. ԴՈՒՆՈՅԱՆ
Գլավլիտի լիազոր Ն—5151. պատվեր 469
Տիրաժ 10.000
Հանձնված է արտադրության 5/I 1938 թ.
Ստորագրված է տպագրության 6/I 1938 թ.

«ԽՈՐՀՐԴ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ, ՅԵՐԵՎԱՆ

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ „Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։